Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՓԵՏՐՎԱՐ 4 1961

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Վ. Ենգիբարյան— *Սովորենք և տարածենք առաջավորների փորձը* . . . . . . . . . 1

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. Աբրահամյան— *Կանանց միջազգային օրը* . . 9

Գ. Հակոբյան— *Զրույց բուրժուական կեղծ դեմոկրատիայի մասին* . . . . . . 19

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

*Ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի* . . . 26

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Զ. Կիրակոսյան— *Բելգիայի բանվոր դասակարգը պայքարում է* . . . . . . . . 30

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

*Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար* . . . . . . . 37

*Թեմաներ և գրականություն Հայկական ՍՍՌ Տեղական Սովետների ընտրությունների կապակցությամբ անցկացվող զրույցների, զեկուցումների և դասախոսությունների* . . . 42

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, III հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—53—78։*



## ՍՈՎՈՐԵՆՔ ԵՎ ՏԱՐԱԾԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

*Ագիտատո՛ր, այս օրերին մեծ և պատվավոր խնդիր է դրված քո վրա։ Վերջերս եղբայրական երեք ռեսպուբլիկաների՝ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորների կյանքում տեղի ունեցավ խոշորագույն իրադարձություն։ Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը, որը ղեկավարում էր ՍՄԿԿ Կենտկոմի Առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը, քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի արդյունքները և, հաշվի առնելով տեղական պայմաններն ու հնարավորությունները, նշեց կոնկրետ միջոցառումներ հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրությունը շեշտակի ավելացնելու համար։*

*Լինելով պարտիական կազմակերպության ակտիվ ու մարտական օգնական, դո՛ւ, ագիտատոր, պետք է քո ունկնդիրներին սիստեմատիկաբար և հանգամանորեն պարզաբա-*

նես խորհրդակցության արդյունքները և այդ կապակցությամբ այն կոնկրետ ու գործնական խնդիրները, որ դրված են ամեն մի կոլտնտեսության, սովխոզի, բրիգադայի, օղակի, կոլտնտեսականի ու մեխանիզատորի առջև։

Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության արդյունքները մասսայականացնելիս հարկավոր է ունկնդիրների ուշադրությունը բևեռել այն հանգամանքի վրա, որ գյուղատնտեսության հետագա վերելքի մասին ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների պրակտիկ իրագործումը համաժողովրդական գործ է։

Հարազատ Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումը ոչ միայն բազմակողմանիորեն քննարկեց սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերը, այլև ձեռնարկեց ռեալ միջոցառումներ հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրությունը ավելացնելու համար։ Պլենումը ցույց տվեց, թե ինչպիսի լուրջ հաջողությունների է հասել մեր երկրի գյուղատնտեսությունը վերջին յոթ տարում։ Նշելով այդ հաջողությունները, ագիտատորը թվեր ու փաստեր է բերում այն





մասին, որ այդ հաջողությունների մեջ իրենց ներդրումն ունեն նաև եղբայրական երեք ռեսպուբլիկաների աշխատավորները։ Նա միաժամանակ ունկնդիրներին հիշեցնում է, որ չի կարելի հանգստանալ ձեռք բերածով, եղած հաջողությունները չեն կարող բավարարել մեզ և որ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը իրավացիորեն նշել է գյուղատնտեսության զարգացման լուրջ թերությունները։

Խորհրդակցության մասնակիցները գոհունակությամբ են խոսել այն մասին, որ Հունվարյան պլենումը օգնել է իրենց՝ բացահայտելու կոլտնտեսություններում ու սովխոզներում առկա հարուստ հնարավորություններն ու ռեզերվները, որոնց օգտագործմամբ իրենք կարող են ավելացնել բամբակի, հացահատիկի, մսի, կաթի ու գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։

Զրույցի այդ մասում ագիտատորը մեջբերում է կատարում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին ուղղված խորհրդակցության մասնակիցների ողջույնից, որտեղ ասված է. «Մեր սրտերը տոգորված են Հունվարյան պլենումի որոշումները հաջողությամբ կատարելու ցանկությամբ։ Մեր ձեռքերը ուժեղ

են և հմուտ, մենք պատրաստ ենք յոթնամյակի երրորդ տարում նոր բնագծեր գրավելու մեծ նպատակի կատարման ասպարեզում, հասնելու բնակչության համար սննդամթերքների և արդյունաբերության համար հումքի առատության»։

Պարզաբանելով Անդրկովկասի ռեսպուբլիկաների Գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության արդյունքները, ագիտատորը առանձնակի ուշադրություն է դարձնում առաջավորների փորձը մասսայականացնելու և այն կոլտնտեսություններում ու սովխոզներում արմատավորելու վրա։ Հայտնի է, որ առաջիկա տարիներին մեր ռեսպուբլիկան պետք է պետությանը վաճառի 4 միլիոն փութ հացահատիկ, 43 հազար տոննա միս և 200 հազար տոննա կաթ։ Այդ ցուցանիշներին հասնելու լավագույն միջոցներից մեկը առաջավորների օրինակով աշխատելն է. «...գյուղատնտեսական արտադրության առաջավորների փորձը,— ասված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին ուղղված խորհրդակցության մասնակիցների ողջույնի մեջ,—որոնք, Ն. Ս. Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ, մեր փարոսներն են, ցույց են տալիս գյուղատնտեսությունը օրի-



նակելիորեն վարելու, բարձր արտադրողականության, մեր էկոնոմիկայի նոր վերելքի ուղին։ Մեր ռեսպուբլիկաներում քիչ չեն այնպիսի օղակները, բրիգադաները և նույնիսկ ամբողջ տնտեսությունները, որոնց ցուցանիշները մի քանի անգամ գերազանցում են շրջանի, մարզի, ռեսպուբլիկայի ցուցանիշները»։ «Մենք,— ասված է նույն տեղում, — ամեն ինչ կանենք, որ լայնորեն տարածենք ու ամենուրեք արմատավորենք այդ առաջավորների փորձը, ապահովենք հացահատիկային կուլտուրաների և, ամենից առաջ, եգիպտացորենի բերքատվության շեշտակի բարձրացում, հանրային հոտում ավելացնենք կովերի գլխաքանակը, հասնենք անասնապահության մթերատվության շեշտակի բարձրացման»։

Այո, իրավացի են Անդրկովկասի ռեսպուբլիկաների Գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցները։ Եթե մեր բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները աշխատեն առաջավորների օրինակով և հասնեն նրանց ցուցանիշներին, ապա մեր ռեսպուբլիկայում ոչ միայն կկատարվի, այլև մեծ չափերով կգերակատարվի գյուղատնտեսության զարգացման յոթնամյա պլանը։

Ագիտատորը վերը հիշված միտքը ավելի համոզիչ դարձնելու նպատակով, առաջավորների ձեռք բերած հաջողությունների մասին համապատասխան օրինակներ է բերում մեր ռեսպուբլիկայից և այն շրջանից, կոլտնտեսությունից ու սովխոզից, որտեղ աշխատում են ունկնդիրները։ Նա պարզաբանում է նաև գյուղատնտեսության մթերքների արտադրության շեշտակի ավելացման համար տեղում եղած բոլոր ռեզերվների առավել լրիվ օգտագործման մեծ կարևորությունը, ինչպես նաև այն լայն հնարավորությունները ու միջոցները, որ կան իրենց մոտ։

Ունկնդիրներին պատմելով խորհրդակցությունում այնքան արդյունավետ քննարկված Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, ագիտատորը նրանց պարզաբանում է նաև, թե մեր ռեսպուբլիկայում ինչպես է ծավալվում սոցիալիստական մրցությունը՝ ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի։ Այդ կապակցությամբ նա կոնկրետ օրինակներ է բերում տեղերից, որոնք ցույց են տալիս գյուղատնտեսության բնագավառի աշխատողների հայրենասիրական մոտեցումը պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները կենսագործելու ուղղությամբ։



Համատեղ քննարկելով Գյուղատնտեսության հետագա զարգացման կարևորագույն հարցերը, Անդրկովկասի եղբայրական երեք ռեսպուբլիկաների ներկայացուցիչները նորից դրսևորեցին ժողովուրդների անխախտ բարեկամությունը։ Ուստի անհրաժեշտ է, որ մեր ագիտատորները ունկնդիրների հետ հատուկ զրույց անցկացնեն «Լենինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակը» թեմայով։ Այդ կապակցությամբ նրանք պետք է օգտագործեն հավատարիմ լենինյան, կոմունիզմի ականավոր մարտիկ ընկ. Ն. Ս. Խրուշչովի խորհրդակցությունում արտասանած փայլուն ճառը՝ ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամության, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի մասին։

«Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— մեր ուժն է, կոմունիզմի գալիք հաղթանակների գրավականը։

Մենք կարող ենք հպարտությամբ նշել, որ բազմազգ Սովետական Միության յուրաքանչյուր ռեսպուբլիկայի աշխատավորությունը իր ներդրումն է կատարել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում»։

Զրույցը հարստացնելով լենինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակի մասին ընկ. Խրուշչովի ասույթներով, ագիտատորը այնուհետև ունկնդիրներին պատմում է Սովետական իշխանության տարիներին եղբայրական երեք ռեսպուբլիկաների աննախընթաց հաջողությունների մասին։ Ընկ. Ն. Ս. Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ ցարական կայսրության հետամնաց ազգային ծայրամասերը ժողովուրդների կամքով ու աշխատանքով դարձել են ծաղկուն սոցիալիստական ռեսպուբլիկաներ՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ, մեքենայացված խոշոր գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ և կուլտուրայով հանդերձ։ Դա լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության քաղաքականության մեծ հաղթանակն է։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

—•—



# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Ամեն տարի աշխարհի բոլոր երկրներում կանանց միջազգային օրը նշվում է որպես ազատության ու իրավահավասարության, խաղաղության ու ժողովուրդների բարեկամության համար մղվող պայքարի համերաշխության օր։

1910 թվականից սկսած այդ օրը նշվել է ամենուրեք, բացի Ռուսաստանից, որտեղ ցարական իշխանության դաժան ռեժիմի պայմաններում, 1911—1912 թվականներին հնարավոր չեղավ անց կացնելու այդ տոնը։ Սակայն 1913 թվականին Պետերբուրգի, Մոսկվայի, Իվանովո-Վոզնեսենսկու և մի շարք այլ քաղաքների առաջավոր բանվորուհիների և բոլշևիկյան պարտիայի կին անդամների ջանքերով կազմակերպված ձևով անցկացվեց այդ օրը։

1914 թվականին Պետերբուրգում լույս ընծայվեց կանանց միջազգային օրվան նվիրված «Ռաբոտնիցա» ամսագրի առաջին համարը։ «Ռաբոտնիցա» ամսագիրն իր շուրջը համախմբեց ճնշված ու հարստահարված, ի-

թավագրկության ու աղքատության մեջ հեծող հազարավոր կանանց՝ պայքարի կոչելով նրանց հանուն ազատության ու իրավահավասարության։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիան նոր դարաշրջան բացեց կանանց համար։ Պատմության մեջ առաջին անգամ կինը տղամարդուն հավասար դարձավ իր երկրի տերը, նոր կյանքի կերտողը։ Ահա մեծ Լենինը ինչպես է բնորոշում կնոջ դերը երկրի քաղաքական, տնտեսական կյանքի կերտման գործում։ «Չի կարող սոցիալիստական հեղաշրջում լինել, եթե աշխատավոր կանանց հսկայական մասը նրան զգալի մասնակցություն ցույց չտա»։ Եվ իրոք, մի՞թե քիչ ծառայություններ են մատուցել և մատուցում են կանայք։ Ո՞ւմ հայտնի չէ այն հանրօգուտ աշխատանքը, որ իր երկրի, իր ժողովրդի համար կատարել են այնպիսի արժանավոր կանայք, ինչպես Կ. Ցետկինը, Ն. Կրուպսկայան, Ռ. Լյուքսեմբուրգը, Լ. Միշելը և շատ ուրիշներ։

Հայ իրականության մեջ էլ քիչ չեն այն կանայք, որ իրենց եռանդն ու ուժերը ներդրել են հարազատ երկրի ու ժողովրդի առաջընթացին։

Հայաստանում Սովետական իշխանության



առաջին իսկ տարիներին, պարտիայի Կենտրոնական և գավառային կոմիտեներին կից կազմակերպվեցին կանանց մեջ տարվող աշխատանքի բաժիններ, որոնք մեր պայմաններում այդ տարիներին չափազանց կարևոր նշանակություն ունեցան կանանց մեր պարտիայի քաղաքականության շուրջը համախմբելու, նրանց երկրի շինարարությանը մասնակից դարձնելու գործում։

Երբեմնի հետամնաց Հայաստանում սկսեց զարգանալ արդյունաբերությունը։ Կամաց-կամաց վեր սլացան արդյունաբերական ձեռնարկությունների ծխնելույզները։ Մեծ օգնություն էր Սովետական Ռուսաստանից ստացված այն առաջին ֆաբրիկան, որով հիմք դրվեց Լենինականի տեքստիլ կոմբինատին։ Նույն այդ շրջանում կազմակերպվեցին նաև մեր ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության մի շարք նոր ֆաբրիկաներ, գործարաններ, որոնք իրենց աշխատանքային բովի մեջ առան հազարավոր բանվորուհիների։ Այդ ձեռնարկություններին կից կազմակերպվեցին մանկամսուրներ, մանկապարտեզներ և կնոջ աշխատանքն ու կենցաղը բարելավելու համար ձեռնարկվեցին մի շարք այլ միջոցառումներ։

Իսկ այժմ որքա՞ն է մեծացել թեթև, սննդի

արդյունաբերության մեջ աշխատող կանանց թիվը։

Բայց ինչո՞ւ միայն թեթև արդյունաբերության մեջ, իսկ որքան բարձրագույն ու միջնակարգ կրթություն ունեցող երիտասարդ աղջիկներ ու կանայք աշխատում են Երևանի ժամացույցի, էլեկտրալամպերի, ճշգրիտ չափիչների, ավտոդողերի և մեր արդյունաբերության մյուս ձեռնարկություններում։ Կանայք զգալի տոկոս են կազմում արտադրության մեջ, որոնք իրենց գերազանց աշխատանքի շնորհիվ արժանացել են բոլորի հարգանքին։

Ահա նրանք։ Լենինի անվան մետաքսի կոմբինատի ջուլհակուհի Ա. Վանոյանը այս տարվա հունվար ամսին նոր ռեկորդ սահմանեց։ Իր կողմից սպասարկվող հաստոցների մեկ ժամվա արտադրողականությունը նախատեսված 2,73 մետրի փոխարեն հասցրեց 2,96 մետրի և այդ ամսին արտապլանային կարգով թողարկեց 800 մետր գործվածք։ Նրանից ետ չի մնում նաև նույն կոմբինատի ջուլհակուհի Ն. Դեմիրճյանը, որը պարտավորվել է ՍՄԿՊ XXII համագումարը դիմավորել տարեկան պլանը կատարած։

Առաջավորների շարքումն է Երևանի ժամացույցի գործարանի հավաքող բանվորուհի



Ա. Մխիթարյանը, որը միշտ իր առաջադրանքները գերակատարում է 40—50 տոկոսով։ Պարտիայի XXII համագումարը արժանավայել է դիմավորում նաև ծխախոտի գործարանի բանվորուհի Ե. Մեծիկյանը։ Նա ամեն օր պլանից դուրս տալիս է 15 հազար գլանակ։

Գյուղատնտեսության մեջ աշխատող առաջավոր կանանցից բոլորին հայտնի է դարձել Ախուրյանի շրջանի ճակնդեղագործ, Լենինի շքանշանակիր Սեդա Սարգսյանի անունը. որի օղակը 1960 թվականին ամեն մի հեկտարից ստացավ 660 ցենտներ ճակնդեղ։

Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի Սոցիալիստական Աշխատանքի Հերոսուհի Նոյեմ Եղիազարյանը խոստացել է իր օղակի մշակած ամեն մի հեկտարից տալ 230 ցենտներ խաղող։

Կաթնատվության բարձրացման համար պայքարում են Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության կթվորուհիները։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսուհի Աշխեն Ավետիսյանը խոստացել է 1961 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ 6.000 կիլոգրամ կաթ։ Բայց մի՞թե հնարավոր է թվարկել արտադրության մեջ աշխատող բոլոր առաջավոր կանանց։

1959 թվականին միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների և տեղական Սովետների դեպուտատ է ընտրվել 693 հազար կին, կամ դեպուտատների ընդհանուր թվի 38 տոկոսը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների 27 տոկոսը կանայք են։

Մեր կանայք նույնպիսի հաջողությամբ մասնակցում են նաև երկրի կառավարմանը։

Միայն ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում և միութենական ռեսպուբլիկաների Գիտությունների ակադեմիաներում գիտաշխատողների 39 տոկոսը կազմում են կանայք։

Մեր երկրում կա շուրջ 600 կին գրող, ավելի քան 1.700 նկարիչ, 2 հազարից ավելի ճարտարապետ, 180 կոմպոզիտոր, երաժըշտագետ։

Միայն 1955—1959 թվականների ընթացքում Հայրենիքի և ժողովրդի նկատմամբ կատարած աչքի ընկնող ծառայությունների համար 69.959 կանայք պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով, իսկ 314 կանայք արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Սովետական Միության Հերոսի կոչում է շնորհված 75 կանանց։

Գիտության ու տեխնիկայի, գրականու-



թյան ու արվեստի ասպարեզում ցուցաբերած ծառայությունների համար Լենինյան և Ստալինյան մրցանակների է արժանացել 749 կին։

Եթե մինչ ռևոլյուցիան մեր երկրի կանանց 86,3 տոկոսն անգրագետ էր, ապա այժմ բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունի 2 միլիոն 763 հազար կին։ Բարձրագույն կրթությամբ մասնագետների 52 տոկոսը կանայք են։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների ընդհանուր թվում կանայք կազմում են 47 տոկոսը։ Առողջապահության բնագավառում աշխատողների 85 տոկոսը կանայք են, իսկ կրթության բնագավառում՝ 69 տոկոսը։

Գնալով կանայք ավելի լայնորեն են ընդգրկվում յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված մրցությանը։

Պետությունն ամեն ինչ անում է կնոջ կենցաղը թեթևացնելու և նրան ավելի լայնորեն մեր սոցիալիստական առօրյային մասնակից դարձնելու համար։ Գնալով ճյուղավորվում է մանկամսուրների և մանկապարտեզների ցանցը։ Այժմ մեր երկրի մանկապարտեզներում և մանկամսուրներում ընդգրկված է մոտ 4 միլիոն երեխա, իսկ 1965 թվականին կլինի

6 միլիոնից ավելի։ Շատ մեծ ուշադրություն է դարձվում գիշերօթիկ դպրոցներին, որոնցում յոթնամյակի վերջում արդեն ընդգրկված կլինի առնվազն 2 միլիոն 500 հազար աշակերտ։

Պետությունն իր պլաններում շատ մեծ տեղ է հատկացնում սառնարանների, լվացքի մեքենաների և այլ կենցաղային առարկաների արտադրությանը, որոնք զգալիորեն թեթևացնում են կնոջ առօրյան։

Սովետական Միությունում շատ մոտ ապագայում կլինի աշխարհում ամենակարճ բանվորական օրը և ամենակարճ բանվորական շաբաթը, որով մեծ հնարավորություններ կբացվեն աշխատավորների, այդ թվում և կանանց առջև իրենց կենցաղը, հանգիստը ավելի գեղեցիկ կազմակերպելու համար։

Ժողովրդա-դեմոկրատական երկրներում ևս բոլոր պայմաններն ստեղծված են կնոջը սոցիալիստական շինարարության մասնակից դարձնելու համար։ Այդ երկրներում արդյունաբերության մեջ աշխատող կանայք կազմում են 30—40 տոկոս, նրանք տղամարդուն հավասար մասնակցում են իրենց երկրում նոր կյանքի կառուցմանը։ Մինչդեռ կապիտալի երկրներում հակառակ պատկեր է տիրում։ Կանայք կապիտալիստական երկրնե-





րում նույնանման աշխատանքի համար շատ ավելի քիչ են վարձատրվում, քան տղամարդիկ։ Կապիտալիստական երկրներում այնպիսի կենսական հարց, ինչպիսին է մայրության ու մանկության պաշտպանության հարցը, չի գտել իր լուծումը։ Այն ժամանակ, երբ մեր և սոցիալիստական լագերի մյուս երկրներում պետության բյուջեներով նախատեսվում և ծախսվում են հսկայական գումարներ այդ նպատակի համար, կապիտալիստական աշխարհում այդ բոլորովին անտեսվում է։ Մեր երկրում 7 միլիոնից ավելի բազմազավակ և միայնակ մայրեր պետությունից ստանում են նպաստ։ Կապիտալիստական երկրներում եղած մանկական ձեռնարկությունները մասնավոր են և վարձր այնքան բարձր, որ անմատչելի է դառնում շատ ու շատ բանվոր-ծառայողների ընտանիքների համար։ Բուժումը փողով է։ Գործազուրկ կանանց թիվը օրեցօր աճում է, միայն Ամերիկայում մոտ 2 միլիոնի է հասնում գործազուրկ կանանց թիվը, նույն դրությունն է տիրում Իտալիայում, Ճապոնիայում և այլ երկրներում։

Գաղութատիրական, ստրկական կապանքներից ազատված Աֆրիկայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի միլիոնավոր ժողո-



վուրդներ այժմ վերջին վճռական մարտերն են մղում սեփական երկրի տերը դառնալու համար։ Այդ պայքարին տղամարդու հետ թև-թևի տված մասնակցում են նաև այդ երկրների կանայք։ Այժմ աշխարհի բոլոր երկրների կանայք պայքարում են հանուն խաղաղության, հանուն մարդկության երջանիկ կյանքի։ Նրանք մեկ մարդու նման ոտքի են ելնում ընդդեմ պատերազմի, հանուն միջուկային զենքի արգելման։ Այդ մասին է խոսում կանանց միջազգային օրվա 50-ամյակի պատվին 1960 թվականի ապրիլին Կոպենհագենում կազմակերպված կանանց միջազգային հանդիպումը, որը վերածվեց հզոր ցույցի պետությունների զինաթափման, ատոմային, ջրածնային զենքի և պատերազմների արգելման ցույցի։ Պատերազմի դեմ կանանց մասնակցությամբ բողոքի միտինգներ ու երթեր են կազմակերպվում Ճապոնիայում, Ֆրանսիայում, Անգլիայում և Ասիայի ու Աֆրիկայի, Լատինա-Ամերիկայի շատ երկրներում։

Այս տարի ևս աշխարհի բոլոր կանայք մարտի 8-ը կդիմավորեն նորանոր հաջողություններով, դրսևորելով իրենց անսասան կամքը խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման նկատմամբ։

Վ. ԱԹԱՆԵՍՅԱՆ

---

# ԶՐՈՒՅՑ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿԵՂԾ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Պետական իշխանության օրգանների ընտրությունները յուրաքանչյուր երկրի քաղաքական կյանքում շատ կարևոր երևույթ են։ Այդ օրգաններում ժողովրդի մասնակցությունից կարելի է որոշել տվյալ պետության դեմոկրատական լինելու ճշտությունը։

Սոցիալիստական դեմոկրատիան մեր երկրում խարսխված է արտադրության միջոցների հանրային սեփականության վրա, որը և քաղաքացիների դեմոկրատական ազատությունների ու իրավունքների հիմքն է։

Սոցիալիստական դեմոկրատիայի շնորհիվ սովետական քաղաքացիները դարձել են իրենց երկրի իսկական տերերը, վճռական ազդեցություն են ունենում հասարակական կյանքի զարգացման վրա, օրըստօրե աճում են նրանց նախաձեռնությունը և աշխատանքային ակտիվությունը, որ ուղղված են կոմունիստական շինարարության վեհ խնդիրների կատարմանը։

Ի տարբերություն բուրժուական կեղծ դեմոկրատիայի, իսկական դեմոկրատիա գոյու-

*թյուն ունի միայն սոցիալիստական երկրներում։ Սովետական կարգերը մեր աշխատավորներին տվել են աշխատանքի, հանգստի, կրթության, ապահով ծերության, պետական օրգաններում ընտրելու, ընտրվելու իրավունք, իրենց ընդունակություններն ու տաղանդը զարգացնելու լայն հնարավորություններ։*

*Կոմունիստական պարտիան, որ մեր ժողովրդի ղեկավարն է, սիստեմատիկաբար կատարելագործում և ընդլայնում է ժողովրդի քաղաքական ու հասարակական գործունեության դեմոկրատական ձևերը, նոր մեթոդներ է կիրառում աշխատավորներին պետական օրգանների աշխատանքներին անմիջականորեն մասնակից դարձնելու համար։*

*Դեմոկրատիայի մասին շատ են բարբաջում կապիտալիստական երկրներում, բուրժուական պրոպագանդան մեծ ջանքեր է գործադրում գովաբանելու «արևմտյան դեմոկրատիան»։*

*Իր ժամանակին Լենինը նշել է, որ բուրժուական դեմոկրատիան արմատապես հակադրվում է սոցիալիստական դեմոկրատիային։ Նույնիսկ ամենադեմոկրատական բուրժուական ռեսպուբլիկան, ասում է նա, վարձու աշխատանքը շահագործելու համար ձև է*



*միայն, բուրժուազիայի կողմից պրոլետարիատին ճնշելու մեքենա։ Նրանք անամոթաբար «ազատ աշխարհ» են անվանում այն, որտեղ իշխում են կապիտալի դաժան օրենքները, որտեղ միլիոնավոր մարդկանց քրտինքով ստեղծված բարիքները լափում են գիշատիչ շահագործողները, իսկ աշխատավոր մասսաները ամենուրեք զրկված են մարդկային գոյության անհրաժեշտ պայմաններից։*

*Կապիտալի աշխարհում աշխատավորները ոչ միայն տնտեսական ծանր պայմաններում են ապրում, այլև զրկված են տարրական քաղաքացիական իրավունքներից։ Այդ առանձնահատուկ կերպով դրսևորվում է պրեզիդենտական, պառլամենտական և տեղական օրգանների ընտրությունների ժամանակ, երբ բազմաթիվ ցենզերի միջոցով շահագործող դասակարգերը միլիոնավոր մարդկանց զըրկում են ընտրական իրավունքից։ Օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգներում բնակչության զգալի մասը, հատկապես նեգրերը, կրթության, գույքային, նստակեցության և այլ ցենզերի պատճառով զրկված են ընտրություններին մասնակցելու հնարավորությունից։ ԱՄՆ-ի չորս նահանգներում ընտրություններին կարող են մասնակցել այն անձինք, որոնք ունեն որոշակի գույք, ութ նա-*

հանգներում, որոնք հատուկ ընտրական հարկ պետք է վճարեն, 19 նահանգներում գոյություն ունի կրթական ցենզ, որտեղ ընտրողները պարտավոր են իմանալ անգլերեն լեզուն և կարողանալ «ճիշտ մեկնաբանել կոնստիտուցիան», 29 նահանգներում ընտրելու իրավունք չունեն զինվորները և նավաստիները։ Բացի այդ, շատ նահանգներում գոյություն ունի նստակեցության ցենզը։

Ընտրական իրավունքներից զրկված են Կալիֆորնիայում՝ չինացիները, Այդահոյում՝ հնդկացիները, Հյուսիսային Կարոլինայում՝ ովքեր չեն հավատում աստծուն։ ԱՄՆ-ի նահանգների մեծ մասում ընտրելու իրավունք ունեն միայն 21 տարին լրացրած քաղաքացիները։

Տարբեր տեսակի ցենզեր գոյություն ունեն նաև կապիտալիստական մյուս երկրներում։ Այսպես, եվրոպական այնպիսի զարգացած երկրում, ինչպես Ֆրանսիան է, կանայք ընտրական իրավունք ստացան միայն 1944 թվականին, իսկ Շվեյցարիայում, Մեքսիկայում, Իրանում և շատ այլ երկրներում կանայք այսօր էլ քվեարկություններին չեն մասնակցում։

Լատինական Ամերիկայի երկրներում (բացի Կուբայից) կրթական ցենզի պատճառով



բնակչության 70—80 տոկոսը ընտրություններին չի մասնակցում։

Սովետական մարդկանց հիշողության մեջ բոլորովին թարմ է պորտուգալական «Սանտա Մարիա» նավի անձնակազմի հերոսությունը, որը վերջերս ապստամբության դրոշ բարձրացրեց ընդդեմ Սալազարի ֆաշիստական ռեժիմի։ Այս երկրում ընտրական ցուցակներից ջնջում են բոլոր նրանց անունները, որոնց «հայացքները և գործունեությունը պետական շահերի համար վնասակար են» ճանաչվում։

Կուբայում մինչև ռևոլյուցիան ընտրություններին մասնակցելը պարտադիր էր։ Չնայած դրան ընտրողների 40—45 տոկոսը դժգոհ Բատիստայի դիկտատորական ռեժիմից, չմասնակցեց 1958 թվականի նոյեմբերի 3-ի ընտրություններին։

Տեռորը, ահաբեկումը, բյուլետենների կեղծումը սովորական բան են կապիտալիստական երկրների և հատկապես ամերիկյան ընտրությունների ժամանակ։ Ամերիկյան իմպերիալիստները միջամտում են նաև մյուս երկրների ներքին քաղաքական գործերին։ Այսպես, 1957 թվականի արևմտա-գերմանական բունդեստագի ընտրությունների ժամանակ, նրանք քիչ գումար չծախսեցին այն

բանի համար, որպեսզի նորից Ադենաուերը իշխանության գլուխ մնար։

Ընտրական կամպանիաների ժամանակ կապիտալիզմի հարազատ պաշտպանի իր դերն է կատարում եկեղեցին։ Հռոմի պապը, կաթոլիկ եկեղեցին Իտալիայի, Ֆրանսիայի և մյուս երկրների իրենց հավատացյալներին կոչ են անում դեմ քվեարկել կոմունիստ թեկնածուներին։

Իտալիայում 1958 թվականի ընտրությունների ժամանակ ռեակցիոներները ընտրողի մեկ ձայնի համար 1000 լիրա կաշառք էին խոստանում։ Իսկ Սիցիլիայում 1955 թվականի հունիսին նրանք բատրակներին նվիրում էին ձախ կոշիկը, պայմանով, որ ձայնը նրանց օգտին տալուց հետո կստանան նաև աջը։ Կամ սկզբում տալիս էին 1000 լիրանոց մուրհակի կեսը, իսկ մյուս կեսը՝ քվեարկությունից հետո։

Իսկ ինչ է տեղի ունենում, երբ ընտրողը մոտենում է քվեատուփին։ Այսպես, ամերիկյան քաղաքացին քվեատուփ պետք է իջեցնի մի բյուլետեն, որով նա միաժամանակ ձայն է տալու պրեզիդենտին, վիցե-պրեզիդենտին, սենատորներին, ներկայացուցիչների պալատի անդամներին, նահանգապետին, դատախազին, դատավորին, առանձին դեպ-



քերում 28-ի հասնող թեկնածուների օգտին։ Պատկերացրեք ընտրողի վիճակը. մի՞թե նա կարող է այդ ցուցակում ընտրություն անել, մանավանդ, երբ հաճախ խախտվում է գաղտնի քվեարկության սկզբունքը։ Օրինակ Անգլիայում քաղաքացուն տրված բյուլետենի կտրոնը պահվում է ընտրական տեղամասում։

Ֆրանսիայում և ուրիշ երկրներում գոյություն ունի ընտրական մաժորիտար սիստեմը, որի ժամանակ մեծ թվով ձայներ ստացողը կարող է պարտվել, իսկ քիչ ձայներ ստացողը՝ ընտրվել։ Այդ սիստեմը ևս օգտագործվում է ժողովրդի իսկական շահերը արտահայտող կոմունիստական պարտիայի դեմ։

Այս ամենը արվում է նրա համար, որպեսզի իշխանության բոլոր օղակներում անցնեն բուրժուազիայի ներկայացուցիչները, կամ նրանք, որոնք հլու կծառայեն նրան։

Ահա այսպիսին է «արևմտյան դեմոկրատիան», այսպես են տեղի ունենում ընտրությունները «ազատ աշխարհում»։

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

---

# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿԿ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

(Համառոտ տեղեկություններ աշխատանքային նվաճումների մասին)

Երևանի արդյունաբերական ձեռնարկություններում բուռն թափով ծավալվում է նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը։ Մայրաքաղաքի բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվները պայքարում են արժանավայել գործերով նշանավորելու հարազատ կոմունիստական պարտիայի XXII համագումարը։ Ահա համառոտ տեղեկություններ այդ մասին։

★ Կիրովի անվան գործարանի մեխանիկական ցեխի մեխանիկ Սուրեն Կոսեմյանը այս տարի գործարանի նորարարական ու գյուտարարական բյուրո է հանձնել ռացիոնալիզատորական 3 նոր առաջարկ։ Նրա առաջարկություններից ստացված տարեկան տնտեսումը կազմում է մոտ 30.000 ռուբլու օգուտ։

★ ԿԱՆԱԶ գործարանի փորձարարական ցեխի վարպետ Վ. Ղարիբյանի նորարարական արժեքավոր առաջարկով ցեխի կոլեկտիվը պատրաստեց կավահողի կեղև ջարդող, էլեկտրոլիզի պրոցեսը կանոնավորող մի



նոր հարմարանք, որի գործադրման շնորհիվ թեթևացվում է ձեռքի աշխատանքը։

★ Կաբելի գործարանի էմալապատման ցեխի պետ Ռաֆիկ Խաչատրյանի առաջարկությամբ պատրաստվել են ձևափոխված վաննաներ (պտտվող լիսեռներով), որոնք կատարելագործել են լարի էմալապատումը, ավտոմատացրել լարը վաննաների մեջ լցնելու պրոցեսը։ Նորարարության ներդրման շնորհիվ 40 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և զգալիորեն բարելավվել է արտադրանքի որակը։ Այս առաջարկության ներդրումից ստացվող պայմանական տնտեսումը տարեկան կկազմի հարյուր հազար ռուբլի։

★ Նորարար Ռաֆիկ Խաչատրյանի մեկ ուրիշ առաջարկի արմատավորման շնորհիվ 30 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և թեթևացել բանվորների աշխատանքը։

★ Կոմպրեսորների գործարանում յոթնամյակի երրորդ տարվա առաջին օրերին ձուլման ցեխում շահագործման հանձնվեց կաղապարման մի նոր մեքենա, որի շնորհիվ մեքենայացվեցին աշխատատար մի շարք պրոցեսներ, և հինգ անգամ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

★ Էլեկտրաշարժիչների գործարանի ձուլման ցեխում օրերս տեղադրվեցին նոր բարձր արտադրողական ճնշման ձուլման երկու մեքենա, և շուտով կավարտվի 3-րդ սարքավորման տեղադրումը։ Այստեղ շահա-

գործման հանձնվեցին նաև մետաղակաղապարման մեքենաներ, որոնց շնորհիվ զգալիորեն ավելացավ էլեկտրաշարժիչների խարիսխների և ստատորների թողարկումը։

★ Կոմպրեսորների գործարանի կոլեկտիվի ուժերով նախագծվել և պատրաստվել է նոր սարքավորում, որի գործարկմամբ ավտոմատացվել են աշխատատար շատ պրոցեսներ։ Դրանով մեկ ու կես-երկու անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել արտադրանքի որակը։ Գործարանում նորարարական աշխատանքներին իրենց ակտիվ մասնակցությունն են ցույց տվել ինժեներ Ա. Մինասյանը, փականագործներ Հ. Սիմավոնյանը, Հ. Սարգըսյանը, էլեկտրազոդող Լ. Ալեքսանյանը և ուրիշներ։

★ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի ջուլհակուհի Ա. Վանոյանը իր սպասարկած հաստոցների մեկ ժամվա արտադրողականությունը նախատեսված 2,73 մետրից հասցրեց 2,96 մետրի և հունվար ամսում արտապլանային կարգով տվեց 800 մետր գործվածք, իսկ ջուլհակուհի Ն. Դեմիրճյանը, որ սպասարկում է 4 ավտոմատ հաստոց, պարտավորվել է մինչև հոկտեմբերի 17-ը կատարել տարեկան առաջադրանքը և յուրաքանչյուր ժամում ամեն մի հաստոցի վրա արտադրել 3 մետր գործվածք։

★ Կոմպրեսորների գործարանի նորարարները այս տարվա հունվար ամսում գործարանի ռացիոնալիզատորական բյուրոյին են ներկայացրել 44 առաջարկ։



Ինժեներ-կոնստրուկտորներ Ա. Սահակյանը, Ռ. Դարբինյանը և Ն. Հարությունյանը արդեն ներկայացրել են նորարարական 9 առաջարկություն, որոնց ներդրումից կստացվի 12 հազար ռուբլու պայմանական տնտեսում։ Գործարանի կոլեկտիվը պարտավորվել է ՍՄԿՊ XXII համագումարի պատվին նորարարական առաջարկությունների ներդրման շնորհիվ նախատեսվածից 50 հազար ռուբլու ավելի տնտեսում ստանալ։

★ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի չափող և կարգավորող սարքերի երիտասարդ ինժեներ Հովհաննես Ոսկանյանը, որը նորարարական բազմաթիվ առաջարկությունների հեղինակ է, նոր տարվա առաջին օրերին շահագործման հանձնեց իր կողմից ստեղծված ջերմա-կարգավորիչը, որն ավտոմատ կերպով ցանկացած մակարդակի վրա է պահում անհրաժեշտ ջերմաստիճանը և հնարավորություն է տալիս ապահովելու նյութերի մշակման տեխնոլոգիան ու ռեժիմը։ Այս առաջարկության շնորհիվ ստացվում է մեծ քանակությամբ հումքի խնայողություն և բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։

Արտադրական նույնպիսի հաջողություններով են աշխատում նաև «Պոլիվինիլացետատ», «Խրոմպիկ», կաբելի, հիդրոպոմպերի, Ստալինի անվան տրիկոտաժի և այլ գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվները, որոնք ամեն ինչ անում են պատվով դիմավորելու ՍՄԿՊ XXII համագումարը։

# ԲԵԼԳԻԱՅԻ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է

Մեր կյանքի յուրաքանչյուր օրը նոր հաստատում է բերում կոմունիստական շարժման ծրագրային փաստաթղթի այն մտքին, որ կապիտալիստական սիստեմն անկման և քայքայման խոր պրոցես է ապրում, որ կապիտալիզմի աշխարհում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև եղած կոնֆլիկտն աննախընթաց չափով սրվել է։ Խոշոր մոնոպոլիաները բոլոր գծերով հարձակվում են բանվոր դասակարգի, ժողովրդական լայն մասսաների շահերի վրա, ուժեղացնում աշխատավորների շահագործումը։ Եվրոպայի զարգացած կապիտալիստական երկրներից մեկում՝ Բելգիայում տեղի ունեցած վերջին իրադարձությունները դրա պարզ վկայությունն են։

Ժամանակակից կապիտալիզմի ջատագովները տարիներ շարունակ փայփայում էին այն առասպելը, թե Բելգիան «օրինակելի միապետություն է», որտեղ թագավորում են



անդորրը, բարգավաճումը և դասակարգային հաշտությունը։ Այդ առասպելը օճառի պղպջակի նման այնպես պայթեց անցյալ տարվա դեկտեմբերին, ինչպես «օրինակելի գաղութ» Կոնգոյի մասին առասպելը՝ կես տարի առաջ։ Դեկտեմբերի 20-ին սկսված, իր մասշտաբներով անօրինակ և մեկ ամսից ավելի տևած ընդհանուր գործադուլը ցնցեց ամբողջ երկիրը։ Բելգիայում ժողովրդական լայն պայքար սկսվեց կապիտալիստական մոնոպոլիաների հարձակման դեմ։ Նա հանկարծակիի բերեց բոլոր նրանց, ովքեր հավատում էին դասակարգային համերաշխության մասին հեքիաթներին։ Մի ամբողջ շաբաթ թագավոր Բոդուենը չէր ուզում հասկանալ, որ գործադուլավորները կատակ չեն անում։ Եվ երբ վերջապես հասկացավ, անմիջապես թողեց իր մանկահասակ կնոջ կալվածքը Իսպանիայում և մեկնեց Բելգիա։

Երկիրը ռազմական և տնտեսական ագրեսիվ բլոկներին մասնակից դարձնելու քաղաքականությունը տվել է իր դառն պտուղները։ Արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերը խիստ ընկել են, գործազրկությունը հասել է հսկայական չափերի՝ ավելի քան 200 հազար մարդու։

Խիստ կերպով վատացել է երկրի ֆինան-

սական վիճակը։ ՆԱՏՕ-ի գծով Բելգիան տարեկան ծախսում է 20 միլիարդ ֆրանկ։ Այդ ծախսերը հատկապես ավելացան Կոնգոյում գաղութային կարգերը վերականգնելու ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով։ Միայն օդով Կոնգո զորք փոխադրելը Բելգիային նստում է 30 միլիոն դոլար։ Իսկ Կոնգոյում իրենց դիրքերը պահպանելու բելգիական կապիտալիստների շահագրգռվածությունը բացատրվում է նրանով, որ 1955—1958 թվականների ընթացքում այնտեղից բելգիական գաղութարարների կորզած շահույթը կազմեց 840 միլիոն դոլար։ Այդ հսկայական եկամուտը կորցնելու վախը ուժեղացրեց բելգիական բուրժուազիայի ագրեսիան աֆրիկյան երիտասարդ ռեսպուբլիկայի դեմ։ Միաժամանակ մոնոպոլիաները փորձեցին դրանից ելք փնտրել մետրոպոլիայի աշխատավորների հաշվին։

Մշակելով այսպես կոչված «տնտեսման օրենքը», Էյսկենսի կառավարությունը փորձում էր ապացուցել, որ Կոնգոյի իրադարձությունները ստիպում են բելգիական ժողովրդին տնտեսական մի շարք «զոհողություններ» անել, աշխուժացնելու համար տնտեսությունը։ Սակայն աշխատավոր բելգիացին ոչ մի շահ չունի Կոնգոյում մղվող



գաղութային պատերազմում։ Հայտնի է, որ բելգիական կապիտալ ներդրումները Կոնգոյում կազմում են Բելգիայի ազգային հարստությունների միայն հինգ տոկոսը և Կոնգոյի կորստով չէ, որ պայմանավորված է Բելգիայի տնտեսության ճգնաժամը։

«Տնտեսման օրենքի» 133 հոդվածները 133 պոմպեր են աշխատավորների եկամուտները յուրացնելու, տնտեսական ճգնաժամից դուրս պրծնելու համար։ Ժողովուրդն այդ օրենքն անվանեց «դժբախտության օրենք», իսկ նրա հեղինակ պրեմիեր մինիստր Էյսկենսին՝ «պարոն տնտեսում»։ Հենց այս չարաբաստիկ օրինագիծն ուղղակի առիթ ծառայեց, որպեսզի ոտքի ելներ ամբողջ աշխատավոր Բելգիան՝ երկաթուղայիններն ու ածխահատները, էլեկտրիկները, դոկերներն ու մետաղագործները։ Ընդհանուր գործադուլին մասնակցեցին ինչպես արդյունաբերական հիմնական շրջանի՝ Վալոնիայի, այնպես էլ Ֆլանդրիայի աշխատավորները։ Չէին գործում եվրոպական ցամաքի խոշորագույն նավահանգիստ Անտվերպենը, երկաթուղային և քաղաքային տրանսպորտը։ Երկրի տնտեսական կյանքը չլավել էր։

Էյսկենսի կառավարությունը բանակի ու

ոստիկանության միջոցով, կաթոլիկ եկեղեցու և այլ արհմիությունների ռեակցիոն պարագլուխների աջակցությամբ փորձում էր պառակտել գործադուլավորների միասնությունը, ռեպրեսիաներ էր կիրառում նույնիսկ անձեռնմխելիության իրավունքից օգտվող պառլամենտի անդամների նկատմամբ։ Վիրավորների, սպանվածների և բանտ նետվածների թիվն օրեցօր ավելանում էր։Շենե քաղաքում ոստիկանության կողմից սպանված գործադուլավոր բանվոր, անվանի սպորտսմեն Ժոզեֆ Վուսանի թաղումը վերածվեց հսկայական հակակառավարական ցույցի։

Սակայն, Բրյուսելի և Անտվերպենի, Լյեժի ու Շարլերուայի փողոցներում ու հրապարակներում մինչև օրս էլ չեն դադարում բազմահազարանոց ցույցերը։ Գործադուլավոր բանվորները առաջադրում են ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական պահանջներ, փողոցներում թնդում էին «Ինտերնացիոնալը» և «Մարսելյոզը»։ Բանվորները պահանջում էին՝ «Կորչեն Էյսկենսի կառավարությունը և նրա դժբախտության օրենքը», «Բոդուենը թող կորչի Իսպանիա»։ Գործադուլին մասնակցել է 1 միլիոն երկու հարյուր հազար մարդ։ Գործադուլավորների



առաջին շարքերում էին բելգիական կոմունիստները՝ աշխատավոր ժողովրդի շահերի ամենահետևողական պաշտպանները։ Գործադուլի ընթացքում Բելգիական կոմունիստական պարտիայի օրգան «Դրապո Ռուժ» թերթի տպաքանակն ավելացել էր երեք անգամ։

Այն ժամանակ, երբ բելգիական աշխատավորները շարունակում էին հերոսական պայքարը կառավարության հակաժողովրդական օրինագիծը տապալելու համար, սոցիալիստական պարտիայի ղեկավարները գործադուլավորների թիկունքում գործարք կնքեցին կառավարության ու նրան օժանդակող կաթոլիկ եկեղեցու և քրիստոնեական արհմիությունների ղեկավարության հետ՝ գործադուլը դադարեցնելու և աշխատանքը վերսկսելու համար։ Դա է պատճառը, որ Էյսկենսը համառեց, ետ չվերցրեց իր օրինագիծը, չհեռացավ պրեմիեր մինիստրի պոստից։ Բայց երկրում ստեղծված վիճակից բելգիական բուրժուական մամուլը ելքը տեսնում է պառլամենտի ցրման և ներկա կառավարության հրաժարականի մեջ։ Ուժերի փոխհարաբերությունը պառլամենտում, որտեղ օպոզիցիան փոքրամասնություն է կազմում, չի արտացոլում երկրի իրական

դրությունը։ Բնակչության ճնշող մեծամասնությունը հանդես է գալիս ընդդեմ կառավարության։

Գործադուլային կոմիտեի նախագահ Անդրե Ռենարը վերջերս հայտարարեց, որ պառլամենտը վաղուց արդեն այն տեղը չէ, որտեղ պաշտպանում են աշխատավորների շահերը։

Թեև գործադուլը դադարել է, բայց բելգիական բանվոր դասակարգի պայքարը շարունակվում է։ Թե իր ներքին ռեակցիոն քաղաքականությամբ և թե Կոնգոյում կատարած իր անօրինակ խժդժություններով Բելգիայի կառավարող շրջանները վերջնականապես վարկաբեկված են։ Համաշխարհային հասարակական կարծիքը, ամբողջ առաջադեմ մարդկությունը այս օրերին անարգանքի սյունին են գամում բելգիական գաղութարարներին, նրանց հովանավորող Համարշելդին, իրենց անսահման ցասումն են արտահայտում։ Պատրիս Լումումբայի ու նրա զինակիցների չարանենգ սպանության կապակցությամբ։ Հեռու չէ այն օրը, երբ պատմությունը վերջնական դատաստան կկայացնի գաղութակալության նկատմամբ։

Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Դեպի ՍՄԿՊ XXII համագումարը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պարտիայի և ժողովրդի մեծ միասնությունը։ *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 14-ի համարում։*

Դեպի ՍՄԿՊ XXII համագումարը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում։*

Ծավալվում է սոցիալիստական մրցությունը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի, *նյութեր նվիրված ՍՄԿՊ XXII համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 2-ի համարում։*

## 2. Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի գա-

լիֆ ճաղբաձակների գրավակաը, *տես, արտասանած Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 12-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին

Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցների նղած ողջույնը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 9-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ* — ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, *զեկուցում, արտասանած Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 7-ի համարում։*

## 3. Կանանց Միջազգային օրը, Մարտի 8-ը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Կանանց բանվորական շարժման խնդիրների մասին Սովետական Ռեսպուբլիկայում, *Երկեր, հատոր 30, էջ 29—38, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը, *Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ժողովրդի բարեկեցության բարձրացումը և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները, *ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1961 թվականի հունվարի 17-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 21—24-ի համարներում։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա *(Հիմնական օրենք)։*

## 4. Ավելի շատ արդյունաբերական արտադրանք երկրին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ապահովել արդյունաբերության նոր առաջընթացը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 15-ի առաջնորդողը։*

Ծավալվում է սոցիալիստական մրցությունը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի, *նյութեր ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 31-ի համարում։*

## 5. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հաջողությունները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պետական պլանի կատարման ար-

*գյուճճների մասին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 26-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի Պետական պլանի կատարման արդյունքների մասին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 10-ի համարում։*

## 6. Հանուն գյուղատնտեսական մթերքների առատության

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Լիովին օգտագործել Անդրկովկասի գյուղատնտեսության բոլոր ռեզերվները, *Անդրկովկասի ռեսպուբլիկաների Գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում արտասանած ճառից, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 12-ի համարում։*

*ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ — «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 24-ի համարում։*

Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1961 թվականի հունվարի 18-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 20-ի համարում։*

Լիովին օգտագործել գյուղատնտեսության ռեզերվները — *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 29-ի առաջնորդողը։*

## 7. Բարելավենք մատղաշների խնամքը, երկրին տանք ավելի շատ անասնաբուծական մթերքներ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1961 թվականի հունվարի 18-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 20-ի համարում։*

Հայաստանի անասնաբուծության զարգացումը յոթնամյակում, *Հայպետհրատ, 1960։*

Արագ տեմպով զարգացնել անասնաբուծությունը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 27-ի առաջնորդողը։*

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## *ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԱՆՑԿԱՑՎՈՂ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ*

### *I ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ*

*1. ՍՍՌՄ Կոնստիտուցիան հաղթանակած սոցիալիզմի կոնստիտուցիան է։*

*2. Սովետական դեպուտատը ժողովրդի ծառան է։*

*3. Տեղական Սովետների կազմակերպող դերը յոթնամյակի խնդիրների կատարման պայքարում։*

*4. Տեղական Սովետների դերը աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման գործում։*

*5. Տեղական Սովետների դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։*

*6. Ինչպե՞ս է աշխատում աշխատավորների դեպուտատների մեր Սովետը։*

*7. Սովետական իշխանությունը իսկական ժողովրդական իշխանություն է։*

*8. Բուրժուական իշխանությունը մոնոպոլիստների հնազանդ գործիք է։*



*9. Սոցիալիստական դեմոկրատիայի առավելությունը բուրժուական դեմոկրատիայի նկատմամբ։*

### Գրականություն

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Սովետական Սոցիալիստական դեմոկրատիայի մասին, *Հայպետհրատ, 1959 թ.։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին: *Զեկուցում ՍՄԿՊ XXII արտահերթ համագումարում 1959 թվականի հունվարի 27-ին, Հայպետհրատ, 1959։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ճառ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *1959 թվականի փետրվարի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թ. փետրվարի 25-ի համարում և հրատարակված առանձին բրոշյուրով։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ժողովրդի բարեկեցության բարձրացումը և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները, *Ճառ արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 21—24-ի համարներում։*

*Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ* — Ճառ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում *1958 թվականի մարտի 12-ին, առանձին գրքույկ։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա *(Հիմնական օրենք)։*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա *(Հիմնական օրենք)*։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների օկրուգային, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային Սովետների ընտրություններ անցկացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում։*

*Շ. Մ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ*— Սովետների աշխատանքը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 27-ի համարում։*

*Ա. ԳՈՐՇԵՆԻՆ, Ի. ՉԵԼՅԱՊՈՎ* — Սովետական ընտրական սիստեմը, *Հայպետհրատ, 1958։*

Ա. ԽՍԱՅԱՆ.— Սովետական դեմոկրատիայի ամրապնդումն ու զարգացումը, Հայպետհրատ, 1959։

Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն օրգանները, *Հայպետհրատ, 1959։*

*ԱՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Պ. ՍԱՖՅԱՆ*— Ընտրողների շրջանում տարվող ագիտացիոն աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1958։*



*Շ. Ն. ՊԵՏՐՈՍՅԱՆ* — Հայկական ՍՍՌ պետական իշխանության տեղական օրգանները, *Հայպետհրատ։*

*II. Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ*

*1. Նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿՊ XXII համագումարը։*

*2. ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշումները՝ գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի նոր շեշտակի վերելքի ծրագիրն է։*

*3. Գյուղատնտեսության հետագա զարգացման համար պայքարը համաժողովրդական գործ է։*

*4. Բոլոր ուժերը ի սպաս դնենք ժողովրդական տնտեսության 1961 թվականի՝ յոթնամյակի երրորդ տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը։*

*5. Ինչպես են մեր ռեսպուբլիկայի աշխատավորները կատարում յոթնամյա պլանը։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Ճառ կոմունիստական պարտիայի դերի մասին: *Արտասանած Կոմինտերնի 2-րդ կոնգրեսում։ Երկեր, հատոր 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

ՍՄԿՊ հերթական XXII համագումարի հրավիրման մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1961 թվականի հունվարի 10-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 11-ի համարում։*

Դեպի ՍՄԿՊ XXII համագումարը, *«Պրավդա»-ի 1961 թվականի հունվարի 12-ի առաջնորդողը, տպա-*

*գրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում։*

Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 20-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի մասին ինֆորմացիոն նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 11—17-ի համարներում։*

Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասին նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի համարներում։*

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1961 թվականի պետական բյուջեի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 31-ի համարում։*

*Լ. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ* — Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։*



Նշումների համար

Նշումների համար



## СОДЕРЖАНИЕ

Стр.

**МЕТОДИЧЕСКАЯ ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

В. Енгибарян—Учимся и распространяем опыт передовиков . . . . . . . . 1

**МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД**

В. Атанесян—Международный день женщин . . . . . . . . . . . . . . . . 9

Г. Акопян—Беседа о ложной буржуазной демократии . . . . . . . . . . . . 19

**ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ**

В честь XXII с'езда КПСС . . . . . . 26

**ОТВЕЧАЕМ НА ВОПРОСЫ ЧИТАТЕЛЕЙ**

Дж. Киракосян—Рабочий класс Бельгии борется . . . . . . . . . . . 30

**В ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

Темы и литература для бесед агитаторов . 37

Темы и литература для бесед, докладов и лекций по поводу выборов в местные Советы Арм. ССР . . . . . . . . . . 42

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հ. Հարությունյան— *Հայ ժողովրդի պատմություն 2 պրակով (Հոկտեմբերյան ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաստատումն ու ամրապնդումը Հայաստանում (1917—1921 թ թ.), 213 էջ, գինը 40 կոպ.*

Գ. Գյուլամիրյան— *Օգնություն արտադրության գնացող սկսնակներին, 72 էջ, գինը 10 կոպ.*

Գ. Ս. Աղախանյան— *Ջրային տնտեսության զարգացումը Հայաստանում, 150 էջ, գինը 40 կոպ.։*


Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 4 1961 г.

*ՎՖ 01971 Պատվեր 108 Տպաքանակ 9363*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը՝ 8 կոպ.*